## ԺԻՒՍԷՅԻՆ ՃԱՀԻՏ ԲԱՆՏԱՐԿՈՒԱԾ

Թուրք տխրահռչակ ամբոխավարը, Ժիւսէյին Ճահիտ Եալչըն, որ 80 տարեկան է, վերջերս 26 ամիս բանտարկութեան եւ մեծագումար տուգանքի դատապարտուած էր, կարգ մը անուանարկու թիւններ կատարած ըլլալով «Հալքճը» եւ ուրիշ թերթերու մէջ:

Դատապարտեալը վճռաբեկ ատեանին դիմած էր, որ հաստատեց վճիռը: Ճահիտ Դեկտեմբեր 6ին ձերբակալուելով փոխադրուեցաւ Սկիւտարի բանտը:

«Լը Մոնտ»ի Թղթակիցը Պոլսէն կը հեռագրէ թէ հարիւրաւոր բողոքի հեռագիրներ հասած են եւ լրագրական պայքար մը սարքուած է, դատապարտեալը արձակելու համար: Բողոքներ ստորագրած են մամուլի սենտիքաները, պաշտօնեաները, լրագրողներու ընկերակցութիւնը, խնդրելով որ Հանրապետութեան նախագահը ներում շնորհէ Թուրք լրագրութեան երիցագոյն վաստակաւորին: Իզմէթ եւ ուրիշ երեսփոխաններ Անգարայէն Պոլիս գացած են, բանտարկեալը մխիթարելու համար:

Ընթերցողները կը յիշեն թէ այս մոլեռանդ իթթիհատականը վերջերս յայտնապէս կը սպառնար փոքրամասնութեանց, մեղադրելով թէ բացասական դիրք բռնած են իր կուսակցութեան՝ «Հալք»ի դէմ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԼՄՏԱԿԱՆ նախարարը յայտարարեց թէ ոչ նոր տուրքեր պիտի հաստատուին 1955ին, ոչ ալ Փրանքի արժեզրկում պիտի կատարուի, զարկ տալու համար տնտեսական գործունէութեան: Նախարարը միշտ լաւատես է ապագայի մասին: Երկրին արտաքին առեւտուրը բարւոքած է, պետութիւնը արդէն Պանք տը Ֆրանսի վերադարձուցած է 80 միլիառ Փր: եւ ի վիճակի է քսան միլիառ եւս վճարելու Դեկտեմբեր 15ին: Նոր միջոցներ ձեռք պիտի առնուին, գիները իջեցնելու համար:

ԹՈՒՆՈՒԶԻ ըմբոստներուն զինաթափութիւնը կը շարունակուի: Անձնատուր եղած ըմբոստներուն թիւը հասած է 1560ի: Յանձնուած են 1212 զէնքեր: Նոր Տեսթուր կուսակցութիւնը հանդանակութիւն կը կատարէ փողոցներու մէջ, օգնելու համար զինաթափ եղած ըմբոստներուն:

ԱԼԺԵՐԻԱՅԷՆ հասած լուրերու համաձայն, ահաբեկչական արարքները կ'աճին Ալժէ նահանգին մէջ: Նոր յարձակումներ կատարուեցան հեռաձայնի գիծերուն վրայ, եւ սպաննուեցաւ քաղաքապետական խորհուրդի մը նախագահը: Ազատագրական կոմիտէն սպառնագիրներ կ'ուղղէ աջ ու ձախ:

ԻՐԱՆԻ ՇԱՀԸ Նիւ Եորք հասաւ, ուր բժշկական գործողութեան պիտի ենթարկուի: Դեկտ. 13ին պիտի տեսակցի նախագահ Այզընհաուըրի հետ, քննելու համար թէ Իրան ինչ ձեւով կրնայ մասնակցիլ Մ. Նահանգներուն, Թուրքիոյ, Իրաքի եւ Փաքիստանի միջեւ կնքուած զինակցութեան:

ԴԵՐԱՍԱՆ ԳՄԲԷԹԵԱՆԻ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ժողովը այսօր չորեքշաբթի ժամը 18·30ին, Ազգ. Տուն:

### ԾԱԽՈՒ ՏՈՒՆ

Ծախու է փավիյեօն մը 13 սենեակ, Շաւիլի կայարանին մօտ (Մոնփառնասէն եւ Էնվալիտէն):

Դիմել.— Պալեան Պաղտասար,

8, Clos de la Petite Provence, Chaville



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք մեր բաժանորդներէն փակել իրենց հաշիւները Դեկտ.ի ընթացքին: Բոլոր անվճար թերթերը պիտի դադրեցնենք Դեկտ. 31ին:

× Անոնք որ Դեկտեմբերի ընթացքին կանխիկ կը վճարեն 1955 բաժնեգինը, նուէր պիտի ստանան Յառաջի պատի օրացոյցը:

## ԻՏԱԼԻՈՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը յիշեցնենք մեր Իտալիոյ բաժանորդներուն, որ տարեկան բաժնեգինն է 1954 Յունուար 1էն ի վեր 6000 ԼԻՐ: Կը խնդրուի փութացնել վճարումները Բժ. Ե. Արզումանեանի միջոցաւ.

Վիա Քափէլարի 3, Միլանօ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՀԻՆԳՇԱԲԹԻ ԴԵԿՏ. 9, ԺԱՄԸ 21ԻՆ

### RECITAL

Սպանիական դասական եւ ժողովրդական պարերու

ՀԱՅԱԶԳԻ ՊԱՐՈՒՀԻ՝
ԼԻՒԹԻՍ ՏԸ ԼԻՒՋ

Տոմսերու գին՝ 200էն 1000 Փրանք: Դիմել Թատրոն եւ բոլոր գործակալութեանց:

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբունդի Փարիզի Ահարոնեան խումբի կողմէ: Կիրակի 12 Դեկտեմբեր, ժամը 15էն մինչեւ 23, Ազգ. Տան մէջ:

Հաճելի եւ երիտասարդական մթնոլորտ: Սիրով կը հրաւիրուին Նոր Սերունդի բոլոր անդամները, ինչպէս նաեւ մեր բարեկամները: Ճոխ պիւֆէ:

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԱՄԱՍԻՈՅ ԻՐԵՐՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

Օթէլ Նորմանտիի շքեղ սրահներուն մէջ 28 Պուլվ. տ'Աթէն (Մարսէյլ), 12 Դեկտ. կիրակի ժամը 3–24:

Ընտանեկան զուարթ մթնոլորտ:

Խաղերու մրցում եւ ուրիշ անակնկալներ: Ճոխ եւ մատչելի պիւֆէ:

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ ԾԱԽՈՒ Է

Նպարավաճառատուն մը: Երեք սենեակ, ամէն յարմարութիւններով: Ելեկտրական լոյս, ջուր: Մանրամասնութեանց համար դիմել Խօքսիւզեանի, 10 ռիւ 14 Քանթօն, Վալանս (Տրոմ):

## ԾԱԽՈՒ Է

Փարիզէն 10 վայրկեան հեռու արուարձանի մը մէջ տուն մը բոլոր յարմարութիւններով, բաղնիք, կեդր. ջերմութիւն, պատշգամ, չորս սենեակներով, տակը խանութ մը եւ նկուղ (քավ), փոքր պարտէզով մը, անմիջապէս տրամադրելի:

Դիմել Պ. Ա. Սրապեանի 3 ռիւ Լիէօթնան Ռաուլ Պաթանի, Մէօտօն (Սէն է Ուազ):

Հաղորդակց. Միջոց.— Մէրի տ'Իսիէն օթօպիւս 190 եւ 160, իջնել Օփիթալ Փէրսի:



## ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ «ՀԱՅԱՍՏԱՆԻ ՕՐ»Ը

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի Շրջ. վարչութեան:

Մասնակցութեամբ իր շրջանի բոլոր խումբերուն:

Դեկտեմբեր 11, երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, «Բըլիւպ»ի գեղեցիկ սրահին մէջ (51 ռիւ Կոլինեան):

Ա. մաս.— Գեղարուեստական բաժին ժամը 9էն մինչեւ 12:

Բ. մաս.— 12էն մինչեւ լոյս եւրոպական պարեր, մասնակցութեամբ EDDIE TOURNEL նուագախումբին:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ, ժամը 21ին, Ռէժան սրճարանին վերնայարկը: Դասախօսն է Պ. ԳՐԻԳՈՐ ՃԻԶՄԷՃԵԱՆ, նիւթը՝ Աջին եւ ձախին գաղտնիքները ժողովուրդներու կեանքին մէջ: Մուտքը ազատ է:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի երեկոյ Քաֆէ Քատէի վերնայարկը: Կը խօսի՝ Պ. Վ. ԶԷՅԹՈՒՆՑԵԱՆ: Նիւթը՝ Պետութեան նոր ստորոգելիները, ազատութեան եւ անկախութեան հարցը:

Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր - Սերոբ եւ Մ. Եօթնեղբայրեան խումբի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Շատ կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս շաբաթ ժամը 21ին, «Ահարոնեան» ակումբը: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս շաբաթ, ժամը 20·30ին, «Համօ Օհանջանեան» ակումբը: Ներկայանալ անդամատետրով: Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս ուրբաթ, ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը այս շաբաթ ժամը 8·30ին, Խրիմեան դպրոցը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՇԱԻՒԼ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 9ին, դպրոցին սրահը: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՈՒՐՖԱՅԻ Հայր. Միութեան ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 9ին, Քաֆէ Ռէժան:

քանի որ խնդիրը կապ ունի Ֆրանսայի եւ մեծագոյն Ֆրանսայի հետ»: (Ծափեր):

× Ուրբաթ օր 206 Հիւս. Ափրիկեցիներ ճամբայ ելած էին դէպի Ազգ. ժողով, ցոյց մը կատարելու համար: Ոստիկանութիւնը ցրուեց բոլորը, զանազան պահականոցներ առաջնորդելով:

× Վիճաբանութիւնները տեւեցին 26 ժամ եւ վերջացան շաբաթ առտու ժամը 5.45ին: Կառավարութիւնը վստահութիւն չահեցաւ 265ի դէմ 294 ձայնով, շարունակելու համար իր ծրագրած քաղաքականութիւնը:

× Թունուզի մէջ անձնատուր եղած են 2539 ըմբոստներ, յանձնելով 1989 զէնք:

## ՄՈՍԿՈՒԱՅԻ ՆՈՐ ԾԱՆՈՒՑԱԳՐԷՆ ԵՏՔ ՋԼԱՄԱՐՏԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ

Երէկ ամփոփած էինք Ռ. Միութեան նոր ծանուցագիրը, որով կ՚ազդարարէր թէ պիտի ստիպուին աւելցնել իրենց զինեալ ուժերը, եթէ արեւմտեան պետութիւնները վաւերացնեն Փարիզի համաձայնութիւնները:

Այս ազդարարութիւնը, որ մասնաւորապէս ուղղուած էր Ֆրանսայի դէմ, մեծ ազդեցութիւն չգործեց քաղաքական շրջանակներու մէջ: Մ. Նահանգներու արտաքին նախարարութեան բանբերը յայտարարեց թէ «ոչ մէկ նորութիւն կայ խորհրդային ծանուցագրին փաստարկութեանց մէջ եւ թէ Մ. Նահանգները միտք չունին անմիջապէս պատասխանելու»: Բանբերը աւելցուց թէ արտաքին նախարարը առիթ պիտի ունենայ այս մասին խօսելու Ֆրանսայի եւ Անգլիոյ պաշտօնակիցներուն հետ, երբ Փարիզ երթայ, Ատլանտեան խորհուրդի ժողովին առթիւ:

Ուաշինկթընի դիւանագիտական շրջանակները չեն հաւատար որ փոփոխութիւն մը կատարուի Ռ. Միութեան եւրոպական քաղաքականութեան մէջ: Այս առթիւ դիտել կուտան թէ Աւստրիոյ մասին տրուած պատասխանը անգամ մը եւս կ՚ապացուցանէ թէ ոչինչ փոխուած է Մոսկուայի դիրքին մէջ, մինչդեռ այս խնդիրը նոր պատեհութիւն մը կազմէր, որպէսզի Ռ. Միութեան վարիչները հաստատեն թէ տրամադիր են օգտակար բանակցութիւններ կատարելու:

Անգլիոյ մէջ ալ նոյն համոզումն ունին եւ կ՚ըսեն բացորոշապէս,— Ռ. Միութիւնը իր վերջին ծանուցագրով անգամ մը եւս կ՚ապացուցանէ թէ այժմ անօգուտ է դրական բանակցութիւն մը կատարել Մոսկուայի հետ: «Ռ. Միութիւնը երբեք տրամադիր չէ թուլցնելու իր տիրապետութիւնը ոչ արեւելեան Գերմանիոյ, ոչ ալ Աւստրիոյ վրայ: Ծանուցագիրը ժխտական պատասխան մըն է Պ. Մենտէս Ֆրանսի կատարած փորձին որով կ՚ուզէր չօշափել Ռ. Միութեան տրամադրութիւնները: Ուրեմն Ֆրանսայի վարչապետին դիրքը աւելի կը զօրանայ, վաւերացնելու համար Փարիզի համաձայնութիւնները»:

Փարիզի քաղաքական շրջանակներուն մէջ ալ նոյն տպաւորութիւնը կրած են: Կարճ խօսքով, ջլամարտը կը շարունակուի:

### ՁԻՒՆ – ՁՄԵՌ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԷՋ

Վերջին տեղեկութիւնները կը հաստատեն թէ ծանր ողողումներ պատահած են Ֆրանսայի արեւելեան եւ հարաւ-արեւելեան շրջաններուն մէջ: Փոթորիկն ալ մեծ աւերներ կը գործէ: Ռոն գետը անցած է վտանգի աստիճանը, Լիոնի շրջանին մէջ: Սօնն ալ յորդած է: Ողողումները մասնաւորապէս ծանր վնասներ պատճառած են Վիէնի մէջ: Գետակ մը յորդելով ողողած է շրջակայ արհեստանոցները եւ գործարանները, ինչ որ աննախընթաց աղէտ մը կը համարուի: Կամուրջ մը փլաւ Կրընոպլի մէջ: Հեռաձայնի եւ ելեկտրականութեան բազմաթիւ գիծեր խզուած են հիւս. շրջանին մէջ: Անընդհատ անձրեւ կը տեղայ Բոթ տ'Ազիւրի մէջ: Շատ մը ճամբաներ անանցանելի դարձած են ամէն տեղ:

Փոթորիկը եւ ողողումները մեծ աւերներ կը գործեն նաեւ Անգլիոյ եւ Իրլանտայի մէջ: Ձիւն – ձմեռը հետզհետէ կը սաստկանայ ամբողջ Եւրոպայի մէջ: Աւստրիոյ եւ Զուիցերիոյ կառավարութիւնները արտակարգ միջոցներ ձեռք առին, վախնալով ձիւնակոյտերէ:

× Լիոնէն կը հեռագրեն թէ անձրեւները կը շարունակուին անընդհատ, աւելի ծանրացնելով կացութիւնը: Ամբողջ Ռոնի շրջանը վտանգուած է:



### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի Ահարոնեան խումբի կողմէ: Կիրակի 12 Դեկտեմբեր, ժամը 15էն մինչեւ 23, Ազգ. Տան մէջ:

Հաճելի եւ երիտասարդական մթնոլորտ: Սիրով կը հրաւիրուին Նոր Սերունդի բոլոր անդամները, ինչպէս նաեւ մեր բարեկամները: Ճոխ պիւֆէ:

### ՆՈՒԷՐՆԵՐ

Նոր տարուան առթիւ բարեսէր Տիկին մը կը նուիրէ «Յառաջ»ի տարածման հազար, «Յառաջ»ի գրաշարներուն 500, հայ մայրիկներուն հազար, երկու Հանգստեան տուներուն հազար, Պ.Ա. Գմբէթեանին հազար, Լիոնի եկեղեցիին հազար, Ֆ. Կ. Խաչին հազար, Հ. Կ. Խաչին հազար: Ստանալ «Յառաջ»էն:





### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՀԱՅԿ. ԴԱՏԻ ՄԱՍԻՆ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի, այս երեքշաբթի ժամը 21-ին, Սօսիէթէ Սավանթ, Սալ Է, 28 ռիւ Սէրփանթ, մեթրօ Սէն Միշէլ:

Դասախօս ընկ. Հ. ՍԱՄՈՒԷԼ

Բոլոր երիտասարդները կը հրաւիրուին այս շահեկան դասախօսութեանց:

### ՄԱՐՍԷՅԼ, ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կէյվէի եւ շրջակայ գիւղերու նահատակներուն, ինչպէս նաեւ երջանկայիշատակ Տէր Պասկ Ծ. Վ. Տէր Խորէնեանի յիշատակին կը մատուցուի մասնաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն, Մարսէյլ – Փրատոյի Մայր եկեղեցւոյն մէջ, կիրակի 19 Դեկտեմբեր:

### ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԸԼԼԱԼՈՎ ՖՐԱՆՍԵՐԷՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Հայագէտ Պ. ՖՐԵՏԵՐԻՔ ՖԷՅՏԻԻ կողմէ

Panorama de la Littérature Arménienne

Կազմակերպուած Լիոնի եկեղեցաշէն յանձնախումբին կողմէ, Ուրբաթ, 17 Դեկտ. ժամը 21ին, Սալ Սէնթ Հէլէն, 10 ռիւ Սէնթ Հէլէն, Լիոն:

Կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանի հայ բնակիչները եւ մանաւանդ երիտասարդութիւնը: Մուտքը ազատ է:

Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

### — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս երկուշաբթի ժամը ճիշդ 20.30ին, Յոյներու սրահը, 5 ռիւ Պօնփուա:

Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ: Կարեւոր օրակարգ:

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի ժամը 21ին, Բառէի սրճարանի վերնայարկը:

Կը խօսի Պ. ԳՈՒՐԳԷՆ ԿԻՐԱԿՈՍԵԱՆ (Պուէնոս Այրէսէն): Նիւթը՝ Հարաւային Ամերիկայի հայկ. գաղութներու վիճակը:

### ԱՆՁՐԵՒԻՆ ՎՆԱՍՆԵՐԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

ՎԻԷՆ, (Յառաջ).— Հիմա որ անձրեւը դադրած է եւ հեղեղը իր սաստկութիւնը կորսնցուցած, Վիէնի զանազան թաղերու մէջ վնասներու գումարը յիսուն միլիոնէ աւելի կը հաշուեն։

Հինգշաբթի ամբողջ օրը անընդհատ անձրեւը տեղաց եւ երեկոյեան ժամը 5ի առենները, հայկական թաղամասին (Ռիւ Լաֆայէթ, Ռուտ տը Բանքան) երկու առուակները (Վեկա, Ժեր) մէկէն յորդեցան, որընթաց պղտոր ջուրերը ճամբաները ողողեցին եւ խուժեցին տուներէն, խանութներէն ներս։

Բարեբախտաբար մարդկային կորուստ չկայ ամբողջ քաղաքին մէջ։

Ռիւ Լաֆայէթի բնակչութեան մէջ քանի մը հայ ընտանիքներ եւ խանութպաններ մեծ վնասներ կրեցին այս աղէտէն։ Այսպէս Զաքարեան նպարավաճառատունը ջուրերու տակ մնալով, ապրանքները փճացած են։ Որոշ չափով վնասուած են Սապունճեանի, Մուրատեանի եւ Խ. Պետրոսեանի խանութները, ինչպէս նաեւ Ս. Գալուստեանի կառատունին մէջ եղած ապրանքները։

Փօնթ Էվէքի շրջանին մէջ՝ Սուրէն Թէրզեանի կառաշինարանը ջուրերու տակ մնացած է։ Իսկ քիչ մը անդին, երկու հայ մամիկներ (Զէնկիլէրցի) ճիշդ ատենին ազատուած են շնորհիւ Վիէնի հրշէջներու անձնուիրութեան։— Ա. Կ. Բ.

### ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք մեր բաժանորդներէն փակել իրենց հաշիւները Դեկտ.ի ընթացքին։ Բոլոր անվճար թերթերը պիտի դադրեցնենք Դեկտ. 31ին։

× Անոնք որ Դեկտեմբերի ընթացքին կանխիկ կը վճարեն 1955 բաժնեգինը, նուէր պիտի ստանան Յառաջի պատի օրացոյցը։

### ԻՏԱԼԻՈՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը յիշեցնենք մեր Իտալիոյ բաժանորդներուն, որ տարեկան բաժնեգինն է 1954 Յունուար 1էն ի վեր 6000 ԼԻՐ։ Կը խնդրուի փութացնել վճարումները Բժ. Ե. Արզումանեանի միջոցաւ.

Վիա Քափէլարի 3, Միլանօ։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԸԼԼԱԼՈՎ ՖՐԱՆՍԵՐԷՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Հայագէտ Պ. ՖՐԵՏԵՐԻՔ ՖԷՅՏԻԻ կողմէ

Panorama de la Littérature Arménienne

Կազմակերպուած Լիոնի եկեղեցաշէն յանձնախումբին կողմէ, Ուրբաթ, 17 Դեկտ. ժամը 21ին, Սալ Սէնթ Հէլէն, 10 ռիւ Սէնթ Հէլէն, Լիոն։

Կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանի հայրենակիցները եւ մանաւանդ երիտասարդութիւնը։ Մուտքը ազատ է։

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՀԱՅԿ. ԴԱՏԻ ՄԱՍԻՆ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի, այս երեքշաբթի ժամը 21ին, Սօսիէթէ Սավանթ, Սալ Է, 28 ռիւ Սէրփանթ, մեթրօ Սէն Միշէլ։

Դասախօս ընկ. Հ. ՍԱՄՈՒԷԼ

Բոլոր երիտասարդները կը հրաւիրուին այս շահեկան դասաւանդութեանց։

### ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

Պատուակալ նախագահութեամբ գրագէտ ԿՈՍՏԱՆ ԶԱՐԵԱՆԻ։

Այս շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ ՍՓԼԱՆՏԻՏԻ շքեղ սրահներու մէջ։

Գեղարուեստական բաժին.— Օր. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ (արտասանութիւն, Կ. Զարեանէ), երգ՝ Պ. Ժ. ԳԱՍՊԱՐԵԱՆ (Մարսիլիոյ երաժշտանոցէն)։

Օր. ԷՏՈՒԻՃ ՊԱԼԵԱՆ կը պարէ։

ԾԱՆՕԹ.— Մարսէյլի ուսանողներուն սահմանափակ տոմսեր կէս գինով, նոյն օրը կիշէն։

### ՄՈՒՐԱՏԻ ՕՐԸ

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ... 

ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑԻ ՏԷՍԻՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԸ ԿԸ ՏՕՆԷ

Այս շաբաթ ժամը 20.30ին Հ. Յ. Դ. Տան մէջ։

Կը խօսի Պ. Ե. ԵՐԱՆՈՍԵԱՆ (Փարիզէն)։ Պիտի ներկայացուի Երուանդ Օտեանի ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱՆ (կատակերգութիւն երեք արար), ղեկավարութեամբ Պ. Միքիճան Շիրվանեանի, եւ սիրայօժար մասնակցութեամբ կարող ուժերու։

Այս ձեռնարկին հասոյթը պիտի յատկացուի երկու ուսանողներու Հայեցի բարձրագոյն դպատիարակութեան ծախքերուն։ Մուտք 100 փրանք

### — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊ.— Հ. Յ. Դ. Արամ ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր շրջանի ընկերները այս հինգշաբթի ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ՇԱՒԻԼ.— «Արղութեան» խումբի ժողովը այս հինգշաբթի, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս ուրբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

### « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Փարիզէն Պ. Բարսեղ Սէրճանեան այս տարի եւս մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Պ. Քըլճըքի, Լոնտոն։

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի ժամը 21ին, Քաֆէի սրճարանի վերնայարկը։

Կը խօսի Պ. ԳՈՒՐԳԷՆ ԿԻՐԱԿՈՍԵԱՆ (Պուէնոս Այրէսէն)։ Նիւթը՝ Հարաւային Ամերիկայի հայկ. գաղութներու վիճակը։

### ԲԱՑԱՌԻԿ ԱՌԻԹ

Ծախու է Ավընիւ Կրանտ Արմէ, Փարիզի Մայօ թաղին մէջ, շէնք մը երկու յարկաբաժիններով, չորսական սենեակով, խոհանոց, կեդր. ջերմութիւն եւ 100 քառ. մեթր տարածութեամբ գործատեղի եւ խանութ մը, ամբողջութեամբ ազատ։ Դիմել ՅԱՌԱՋԻ։

Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

### ՃԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԻՍՐԱՅԷԼ շարք մը նաւեր պիտի ստանայ արեւմտեան Գերմանիայէն, իբրեւ հատուցում։ Առաջինը, որ եօթը հազար թոն տարողութիւն ունի, Թէլ Աւիվ հասած է արդէն։ Ուրիշ հինգ նաւեր եւս պիտի յանձնուին յառաջիկայ տարուան ընթացքին։

ՎԱՌՕԴԱՊԵՏ ՏԱՏԵԱՆԻ ժառանգորդները, եղիպտահպատակ Աննա, Նեւրիկ, Նուարդ, Առաքել, Զարեհ եւ Եւա դատ բացած են Թուրքիոյ պետական գանձին դէմ, պահանջելով իրենց վերադարձնել Եշիլքէօյի ընդարձակ հողերը որոնք Տատեան ընտանիքին կը պատկանին եւ որոնց վրայ քաղաքային եւ զինուորական օդակայաններ շինուած են։ Հողերուն փոխարժէքը նուազագոյն 50 – 60 միլիոն ոսկի կը հաշուեն։

ՊՈԼՍՈՅ Գոց Շուկան պիտի վերաշինուի երկու տարիէն, ինչպէս կը գրեն տեղական թերթերը։ Վնասը 19 միլ. ոսկի կը հաշուեն։ 500.000 ոսկի յատկացուած է առժամեայ տաղաւարներու շինութեան համար։

ՖՈՒԹՊՈԼԻ կիրակի օրուան Ֆրանսական ախոյենական հանդիպումներուն իրբեւ հետեւանք, Թուլուզ կորսնցուց իր տեղը։ Ա. բաժանումին գլուխը կը գտնուի Ռէնս 24 կէտով։ Կարեւոր մրցումներէն էր Լիլ – Ռասինկը Փառը տէ Փրէնս, ուր Լիլ պարտութեան մատնեց իր հակառակորդը 1ի դէմ 3ով։

Այրի Տիկ. Պետրոս Փափազեան, Տէր եւ Տիկին Արա Հօտաղեան, Տէր եւ Տիկին Ս. Փափազեան եւ զաւակները (Մ. Նահանգներ), Պ. Պ. Ս. եւ Կ. Փափազեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Երմօքեան, Տիկին Մ. Գըլըճեան, Պ. Նազիկեան, Տէր եւ Տիկին Քիւրտեան, Տէր եւ Տիկին Նասիպեան եւ զաւակը, սրտի խորունկ ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին

ՊԵՏՐՈՍ ՓԱՓԱԶԵԱՆԻ

(58 Տարեկան)

մահը, որ տեղի ունեցաւ իր բնակարանը, 67 Ավընիւ Կամպէթա, Սեւռան։

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այս չորեքշաբթի ժամը ճիշդ 10.30ին Փարիզի Հայոց եկեղեցին (15 ռիւ Ժան Կուժոն), ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փանթէնի գերեզմանատունը։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել։

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՏՕՆԱԾԱՌ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

Կազմակերպուած Վարժարանի Ծնողաց Միութեան կողմէ։ Կիրակի 19 Դեկտ. կէսօրէն վերջ ժամը 4.30էն մինչեւ 10։

Գեղարուեստական ճոխ բաժին, ծիծաղաշարժ ներկայացում, արտասանութիւններ, երգեր, հայկական պարեր եւ անակընկալներ, ապա Կաղանդ Պապայի ժամանումը, առատ եւ օգտակար նուէրներով։ Շքասեղան եւ համով – հոտով ընթրիք, ժողովրդական գիներով։





Անգլիոյ արտաքին նախարարն ալ պաշտպանելով արեւմտեան Եւրոպայի միութիւնը, գիտել տուաւ թէ խաղաղ համակեցութիւնը մասնաւոր, աւելի ճիշդ՝ ժխտական իմաստ մը ունի Ռուսերու մտքին մէջ: «Արեւմուտքը պէտք չէ իջեցնէ իր աստիճանը, մնալով հանդերձ համբերատար եւ պատրաստ՝ բանակցելու Խ. Միութեան հետ, հոգ չէ թէ երբ, Փարիզի համաձայնութեանց վաւերացումէն ետք»:

Մ. Նահանգներու արտաքին նախարարը, Տըլըս իր կարգին մատնանշեց երեք վտանգներ, — առաջին՝ սխալ է խորհիլ կեղծ ապահովութեամբ, երբ վտակի մը մակերեսը հանդարտ է, բայց յորձանքը կը մնայ նոյնը: Երկրորդ՝ Արեւմուտքի հանրային կարծիքը պէտք չէ անհուզողի մատնուի, երբ մակերեսը կը խլրտի, ինչպէս ցոյց կուտայ Ֆրանսայի ուղղուած սպառնալիքը: Եւ վերջապէս, Արեւմուտքը պէտք է զգուշանայ հապճեպ կամ անխորհուրդ ձեռնարկներէ: Այս առթիւ յիշեց 13 ամերիկացի օդաչուներու բանտարկութիւնը Չինաստանի մէջ,— կանխամտածեալ փորձ մը որ կը ձգտի հապճեպ, միակողմանի գործողութեան մը մղել Մ. Նահանգները եւ տկարացնել Ատլանտեան զինակցութիւնը տագնապալի պահու մը:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱԶԳԱԺՈՂՈՎԸ վաւերացուց Թունուզի եւ Մարոքի խնդիրներուն քննութեան յետաձգումը:

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ կոչ մը ուղղեց Ճափոնի, վերահաստատելու համար բարեկամական յարաբերութիւնները:

ՀԻՆԳ ՄԻԼԻՈՆՆՈՑ պահեստի բանակ մը կազմել կ'ուզեն Մ. Նահանգներուն մէջ:

ՊՈԼՍՈՅ ԹԵՐԹԵՐԸ կը գրեն թէ աւազակախումբ մը երեք տարիէ ի վեր կը բանար օտար երկիրներէ եկած նամակները, գողնալով չէքերը, տոլարները եւ ֆրանքները: Յարդ գողցուած դրամը կը հասնի մէկ միլիոնի: Աւազակախումբը կը բաղկանար տասը հոգիէ, գլխաւորութեամբ խալայի Նեկրիի:

ՍՊԱՆԻԱԿԱՆ կառավարութեան որոշումով, կրնան երկիր վերադառնալ այն հանրապետական աքսորականները որոնք ոճիրներ չեն գործած:

ԵԳԻՊՏՈՍԻ ոստիկանութիւնը ձերբակալեց 19 Իսլամ Եղբայրներ որոնք երդում ըրած էին շարունակել իրենց դաւադրական աշխատանքը, հինգ պետերու կախաղանէն վերջ:

ԿԻՊՐՈՍԻ հարցին քննութեան յետաձգումը մեծ սրտաբեկութիւն պատճառեց Յունաստանի մէջ: Քաղաքական շրջանակները դիտել կուտան թէ Թուրքիոյ ներկայացուցիչը բուռն միջամտութիւն մը կատարած էր Ազգաժողովին մէջ, ինչ որ կրնայ ազդել Թուրքիոյ եւ Յունաստանի յարաբերութեանց վրայ: Թուրքերը վճռած են ի դերեւ հանել Աթէնքի ջանքերը:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տ. Կ. ԽԱՉԻ Պուլվար Օտտոյի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ահարոն Կալճեանէ երեք հազար ֆրանք եւ տասը հազար ֆրանք արժող պատի ժամացոյց մը գլրոցին եւ եկեղեցիին համար, իրենց Ամերիկա մեկնումի առթիւ:

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԸՆԿ. ԵՒ ՆՇԱՆ ՓԱԼԱՆՃԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ՔՍԱՆԵՒՀԻՆԳ-ԱՄԵԱԿԸ պատկերազարդ շքեղ հատոր մը, ճոխ եւ այլազան բովանդակութեամբ:

Գին 700 ֆրանք:

Դիմել ՊԱՐՍԱՄԵԱՆ գրատուն, 46 ռիւ Ռիշէ, Փարիզ (9) կամ «Յառաջ»ի:



Imp. Araxes - 46, Rue Richer. Paris (9e)

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՆՇԱՆ ՓԱԼԱՆՃԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ

ՔՍԱՆՀԻՆԳԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻ
ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ
Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ,
փետրուար 13ին, կիրակի կէսօրէ ետք:
Մանրամասնութիւնները յառաջիկային:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏԷՍԻՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի դասախօսութիւնը այս երեքշաբթի, ժամը 21ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Կը խօսի Ստեփան Միլտոնեան: Նիւթը՝ «Հին եւ նոր սերունդները»: Մուտքը ազատ է:

ԱԶԱՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ժողովը այս երեքշաբթի, ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Տարօն - Տուրուբերանի Հայր. Միութիւնը կը տօնէ ՎԱՐԴԱՆԱՆՑԸ Փետր. 12-ին, շաբաթ օր, ժամը 15էն կէս գիշեր: Խնջոյք - պարահանդէսով մը:

Մանրամասնութիւնները յառաջիկային:

×

Հ. Բ. Ը. Մ. Տարեկան պարահանդէսը՝
ՄԱՐՏ 13ԻՆ, ԺՕՐԺ Ե.

ՀԱՄԱԽԱՐԲ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի նախագահը՝ Պ. Պօղոս Տէր-Տէրեան հիւանդանոց փոխադրուած ըլլալով, վարչութիւնը շուտափոյթ ապաքինում կը մաղթէ:

ղործեր: Կը կարծէ՞ք թէ մնացեալներս պիտի նստինք եւ պիտի սպասենք որոշում տալու համար, մինչ հեռաձայնը կը նո-րոգուի:

× Պ. Մենտէս Ֆրանս իր շաբաթական սաւլիսին մէջ խօսելով Մ. Մոլոթեան վերջին ծանուցագրին վրայ, որով կը սպառնար չեղեալ համարել Ֆրանքօ-խորհրդային դաշինքը, բացատրեց թէ ձախողման դատապարտուած է Փարիզի համաձայնութեանց դէմ ուղղուած նոր ռազմախաղը: «Անգլիան ալ դաշնագիր կնքած է Մ. Մոլոթեան հետ, ինչո՞ւ մասնաւորապէս Ֆրանսայի կ'ուղղեն այդ ազդարարութիւնը: Մոսկուայի մէջ աւելի դիւրին կը նկատեն ազդել Ֆրանսայի Ազգ. Ժողովին վրայ, որովհետեւ գիտեն որ մեր երկիրը պառակտուած է եւ իր հանրային կարծիքը խոցելի: Վերջին հինգ տարիներու ընթացքին մենք միշտ սպասեցինք որ Մ. Մոլոթիւնը որեւէ զիջում կատարէ, փոխադարձ համաձայնու-թեամբ կարգադրելու համար առկախ հարցերը: Այդ զիջումը տեղի չունեցաւ ոչ Գերմանիոյ միացման, ոչ Աւստրիոյ հաշտութեան դաշնագրին, ոչ ալ ուրիշ որեւէ հարցի առթիւ: Փարիզի համաձայնու-թիւնները կը նախատեսեն սպառազինու-թեանց սահմանափակումը եւ հակակշի-ռը, կը նախատեսեն կարգ մը ռազմանիւ-թերու չինութեան արգելքը Գերմանիոյ մէջ: Այսպիսի հիմերու վրայ հաստատ-ուած կազմակերպութիւն մը յայտնապէս պաշտպանողական հանգամանք ունի»:

## ԳՈՐԾԱԴՈՒԼՆԵՐԸ ԿԸ ՎԵՐՍԿՍԻՆ

Տեղական թերթերը կը գրեն թէ կարգ մը կայարաններու թղթատարական պաշ-տօնեաները, ինչպէս եւ օդանաւերու ա-պահովութեան պաշտօնեաներուն մեծ մասը որոշած են աշխատանքը դադրեցնել զանազան ձեւերով, Գշ. օրէն սկսեալ (այսօր): Աշխատանքի Դաշնակցութիւնը եւ կայարաններու թղթատարական պաշ-տօնեաներու ինքնավար սենտիքան կ'ու-զեն գործնական ցոյց մը կատարել այս շաբթու, աշխատավարձքի յաւելում պա-հանջելով: Բանուորական Ուժը եւ Քրիս-տոնեայ Աշխատաւորները հակառակ են այս շարժումին: Օդանաւերու ապահո-վութեան պաշտօնեաները ամէն աշխա-տանք պիտի դադրեցնեն ամբողջ երկրին մէջ: Բանթողներուն թիւը կը հասնի 3600 հոգի: Մաքսային պաշտօնեաներու գործադուլը կը շարունակուի:

## ՀԱԿԱՆԳԼԻԱԿԱՆ ՑՈՅՑԵՐ ԿԻՊՐՈՍԻ ՄԷՋ

Շաբաթ օր հականգլիական ցոյց մը տեղի ունեցաւ Նիկոսիոյ գլխաւոր հրա-պարակին վրայ եւ Կիպրոսի միւս քաղաք-ներուն մէջ: Կառավարութիւնը բացա-ռիկ օրէնք մը հրատարակեց: Անգլ. զօր-քը կրակ բացաւ Լիմասոլի մէջ եւ ար-տասուաթոր կազեր արձակուեցան Նիկո-սիոյ մէջ: Քաներկու ոստիկաններ վի-րաւորուեցան: Բացառիկ օրէնքին համա-ձայն, ոստիկանութիւնը կրնայ կրակ բա-նալ ցուցարարներուն վրայ: Նոյն պատի-ժին ենթակայ են բոլոր անոնք որ կը վը-տանգեն խաղաղութիւնը: Ոստիկանները արտասուաբեր կազ արձակեցին Նիկոսիոյ մէջ երբ ցուցարարները կը քարկոծէին անգլ. շէնքերը: Աշակերտներ եւ ուսա-նողներ կը շրջէին փողոցներուն մէջ, պա-հանջելով Յունաստանի կցել Կիպրոսը: Միեւնոյն ատեն գործադուլ մը սարքուե-ցաւ բողոքելու համար Ազգաժողովին դէմ որ յետաձգած էր Կիպրոսի հարցին քննութիւնը: Նոր հրամանով մը արգիլ-ուած են բոլոր ժողովները եւ որեւէ հա-մախմբում՝ հինգ հոգիէն աւելի:

Աթէնքի մէջ ալ հականգլիական ցոյցեր կատարուեցան ուսանողներու կողմէ: Այս առթիւ քուէարկուած բանաձեւ մը կը պահանջէ եւ կանչել Անգլիա գրկուած ու-սանողները եւ արձակել անգլիացի պաշ-տօեաները ամբողջ Յունաստանի մէջ, եւ գրկել անգլիական պատուանշանները եւն: Միեւնոյն ատեն կը դատապարտեն դաշ-նակիցներուն թշնամական դիրքը: Բանա-ձեւը կը յայտարարէ.— «Մենք պատ-րաստ ենք բարձր գին մը վճարելու եւ ա-մէն ինչ զոհելու, բայց ի վերջոյ պիտի յաղթենք»:

ՀԻՒԼԷՍԱԿԱՆ նոր փորձեր պիտի կա-տարուին Մ. Նահանգներուն կողմէ, Մարշալ կղզիներուն մէջ, ինչպէս կը հաղորդեն պաշտօնապէս:

ԱԼԺԵՐԻՈՅ մէկ շրջանին՝ Պայատի մէջ 500 կասկածելիներ հարցաքննուեցան: Զինուորական գործողութիւնները կը շա-րունակուին լեռնային շրջաններուն մէջ:

---

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՆՇԱՆ ՓԱԼԱՆՃԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ

ՔՍԱՆՀԻՆԳԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ՝ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ, Փետրուար 13ին, Կիրակի կէսօրէ ետք:

Մանրամասնութիւնները յառաջիկային:

---

## ԼԻԼԱՅԻ ՁԱՐԹՕՆՔԻ (REVEILLON)

## ՃԱՇԱՑՈՒՑԱԿԸ (1500 ՖՐԱՆՔ)

Հայկական թօփիք, միտիա եւ տերեւով տոլմա, բազմաթիւ տեսակ աղանդերներ, (ապուխտ, երշիկ, թթուներով), պէօրէկ, փորը լեցուած հնդկահաւ, սալատ, պա-ներներ, ԱՆՈՒՇԱՊՈՒՐ, արեւելեան ա-նուշեղէններ (փակլավա, էքմէք քատա-յիֆ) եւ զանազան պտուղներ:

Ընտիր խմիչքներ (շամփանեա, օղի եւն.)

ԿԸ ՆՈՒԱԳԵՆ ՔԱՆՈՆԻ ՊՕՂՈՍ, ՈՒՏԻ ԵՒ ՔԵՄԷՆՉԻՍՏ ԱԼՖՈՆՍ եւ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ ՀԱՅԿ:

Կանխաւ ապահովեցէք ձեր սեղանը՝

TRI. 31-62, 24, Rue St. Lazare
Métro Notre Dame de Lorette

---



Imp. Araxes - 46, Rue Richer- Paris (9e)

---

## ՏՕՆԱԾԱՌ — ՀԱՆԴԷՍ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղի կողմէ, մասնակցութեամբ դպրոցին հոգաբարձութեան: Տեղի պիտի ունենայ 2 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան սրահը:

Ծոխ յայտագիր, սիրուն անակնկալներ: Կաղանդ պապան պիտի այցելէ մանուկնե-րուն:

Մուտքը ազատ է: Կը հրաւիրուի ամ-բողջ գաղութը անխտիր:

Մանրամասնութիւնները տեղին վրայ:

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չո-րեքշաբթի գիշեր:

Կը խօսի Պ. ՎԱՀԱՆ ԶԷՅԹՈՒՆՑԵԱՆ: Նիւթը՝ Ազգային Անկախութեան եւ ազա-տութեան հարցը ըստ պետութեան նոր ըմբռնումներու:

×

Պ. Գ. Մելիքեան կուտայ գեղարուեստ-ական բաժին ձայնագրի վրայ: Մուտ-քը ազատ է:

× Լսարանի հիմնադիրներու տնօրէն ժողովը ընտրեց իր դիւանը միաձայնու-թեամբ հետեւեալ անդամներով.— Արշա-ւիր Խանճտանեան, Գր. Մելիքեան, Նու-պար Յովհաննէսեան, Գր. Ադամեան եւ Վռամ Գույումճեան:

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Համաչարսանճաղի Հայր. Միութեան Լիոնի մասնաճիւղի տարեկան հանդէսը, Յունուար 16ին: Մանրամասնութիւնները տեղին վրայ:

---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի ընդհ. ժողովը այս հինգշաբթի ժամը 21ին Ազգ. Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ՏԷՍԻՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի դա-սախօսութիւնը այս երեքշաբթի, ժամը 21ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Կը խօսի Ստե-փան Միլտոնեան: Նիւթը՝ «Հին եւ նոր սերունդները»: Մուտքը ազատ է:

ԱԶԱՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ժողովը այս երեք-շաբթի, ժամը 20.30ին, սովորական հա-ւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

---

Գերմանիոյ ընկերվարական կուսակցու – թեան, յորդորելով որ դադրեցնեն իրենց ընդդիմութիւնը Գերմանիոյ վերազինման դէմ: Գերման ընկերվարականները նախ միացում կը պահանջեն, պարկելով թէ վերազինումը պիտի դժուարացնէ բանակ– ցութիւնները Մոսկուայի հետ :

### ԿԻՊՐՈՍԻ ԽՆԴԻՐԸ

Կիպրոսի հարցին առթիւ ձայնասփիւռ ճառ մը խօսելով, Յունաստանի Թագաւո– րը հրաւիրեց ժողովուրդը «հաւատարիմ մնալ իրենց բարեկամներուն »: Յետոյ բացատրեց թէ «աշխարհի վրայ չկայ ուժ մը որ կարենայ խափանել Կիպրոսի ժողո– վուրդին ինքնորոշման իրաւունքը : Կիպ– րոսի մեր եղբայրները ազատութիւն կը պահանջեն եւ կ'ուզեն ստանալ զայն յա – նուն ինքնորոշման որուն համար երկու պատերազմեր մղուեցան եւ որուն վրայ հիմնուած է Ազգաժողովին ուխտը : Մայր Յունաստանը հարկադրուեցաւ Ազգաժո – ղովին տանիլ խնդիրը, երբ Մեծն Բրի – տանիա մերժեց ուղղակի բանակցիլ յու – նական կառավարութեան հետ : Դժբախ – տաբար մեր յոյսերը անմիջական գոհա – ցում չգտան: Խնդիրը քննուեցաւ, բայց վերջնական լուծում չգտաւ: Մարդկու – թիւնը յամրաբար բայց ապահով դէպի ազատութիւն կ'ընթանայ »:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ նախագահը, մառեչալ Թիթօ արտակարգ շուքով ընդունուեցաւ Նոր Տելհիի մէջ, յիշեցնելով Հնդկաստա– նի փոխարքայութեան օրերը: Մառեչալը եւ Հնդկաստանի վարչապետը, Նեհրու, շարք մը խորհրդակցութիւններ կատա – րեցին եւ որոշեցին միասնաբար գործել, յանուն խաղաղութեան, կարելի եղածին չափ շատ ազգեր համախմբելով Եւրոպա– յի, Ասիոյ, Ափրիկէի եւ լատինական Ա – մերիկայի մէջ:

ԵԳԻՊՏՈՍԻ նախարարական խորհուրդը սկսաւ քննել ապագայ սահմանադրութիւ– նը, կարելի եղածին չափ շուտ վերջ տա– լու համար ներկայ յեղափոխական շրջա– նին:Նոր Սահմանադրութիւնը պիտի ներ– շնչուի Պելժիոյ, Հոլանտայի եւ Ֆրան – սայի հիմնական օրէնքներէն:

ԱՆԳԼԻՈՅ Լորտերու ժողովին մէջ կա – ռավարութեան ներկայացուցիչը պատաս– խանելով հարցումի մը, յայտարարեց թէ Մեծն Բրիտանիա որեւէ պարտաւորու – թիւն չունի պաշտպանելու Ֆորմոզան եւ թէ կարմիր Չինաստանի մաս չի նկատեր զայն :

ՍԹԱԼԻՆԻ ծննդեան տարեդարձը պիտի տօնուի այս անգամ: Անցեալ տարի զանց առած էին:

ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔԻ ամերիկեան դես – պանները ժողով գումարելով Դամասկո – սի մէջ, որոշեցին .— 1· Բացարձակ չէզո – քութիւն պահել արաբական երկիրներու եւ Իսրայէլի յարաբերութեանց մէջ .— 2· Բոլոր ժողովուրդներու բարեկամութիւ – նը փնտռել .— 3· Օգնել այդ ժողովուրդ– ներուն, որպէսզի զօրաւոր եւ տեւական կառավարութիւններ կազմեն. — 4· Ցար– գել ներկայ հողային դոյավիճակը :

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՓԱՐԻԶ .— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան » խումբի ընդհ. ժողովը այս հինգշաբթի ժամը 21ին Ազգ. Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ .— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ .—
Հինգշբ. ժամը 9ին Համազասպ խումբը:
Ուրբաթ ժամը 9ին Վարանդեան ենթակ.:
Շաբաթ, Քրիստափոր ենթակ. :

Սոյն ժողովները տեղի կ'ունենան սո – վորական հաւաքատեղիները: Ներկայ կ'ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչ – ները : Ժողովները շարունակելի են :

(Շար;)

ՓԱՐԻԶ .— «Փոթորիկ» խումբի ժողովը այսօր չորեքշաբթի ժամը 9ին, սովորա – կան հաւաքատեղին :

ՄԱՐՍԷՅԼ .— Հ. Յ. Դ. Պուլվար Օտ – տոյի Վռամեան ենթակմ. ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս շաբաթ ժամը 20ին ,սովորական հաւաքատեղին : Խիստ կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի կ'առնուին :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՈՐԲ. ՕԳՆ. ՄԱՐՄԻՆԸ շնորհակալու – թեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գարա – եանէ հազար Ֆր. Պ. Փափազեանի մահ – ուան առթիւ: Ազլագանեան հազար Ֆր.:

## ԴԵԿՏԵՄԲԵՐ 31ԷՆ ՎԵՐՋ

Թերթ պիտի չստանան այն բաժանորդ– ները որոնք չեն փակած 1954ի հաշիւները:
Կանոնաւոր եւ կանխիկ վճարումները կը դիւրացնեն վարչութեան գործը, ա – պահովելով թերթին անընդհատ առաքու– մը .: Կանխայայտ շնորհակալութեամբ
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Նոր տարի եւ Ս. Ծնունդ

26 Դեկտ. Կիր. Տօն Ս. Ստեփաննոսի Նախավկային:

1 Յունուար, Շաբաթ, Ամանորի պաշ – տամունք :

5 Յունուար, Չորեքշաբթի, Ճրագա – լոյց Ս. Ծնունդի :
Երեկոյեան պատարագ ժամը 5 :

6 Յունուար, Հինգշ. Ս. Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն Ս. Պատարագ երկսեռ խումբով :

9 Յունուար, Կիր., Յիշատակ Մեռելոց եւ Ջրօրհնէք: Ս. Պատարագ երկսեռ խումբով :

### ՀԱՅԱԾԻՍ ՊԱՏԱՐԱԳ ՊԱՆԵԷՈՅԻ ՄԷՋ

Այս Կիրակի, երեկոյեան ժամը 4·45ին ձայնաւոր պատարագ պիտի մատուցուի Տ. Ռընէ մատրան մէջ, 83 ռիւ տ'Արքէօյ:

× Հայ կաթողիկէ Ս. Խաչ եկեղեցի՝ 24 Դեկտեմբեր, Ճրագալոյց Ծննդեան : Ժամը 17ին ժամերգութիւն, ձայնաւոր պատարագ եւ նախատօնակ:

25 Դեկտ. ԾՆՈՒՆԴ: Ժամը 9·30ին ժա– մերգութիւն, ժամը 10·30ին հայրապե – տական պատարագ, զոր պիտի մատուցա– նէ Գերապայծառ Ամատունի :

### ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀԱՄԱՐ

ԼԻՈՆ .— Եկեղեցաշէն Տիկնանց Միու – թիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները .— Ինպատ եկե – ղեցւոյ շինութեան .— Սեւանէն Տիկին Շաթէր երկու հազար ֆրանք, Տիկին մը հազար ֆրանք, Պէյրութէն Պ. Գարկա – եան 25 հազար ֆրանք, Լը Փիւյիյէն Տէր եւ Տիկին Ուզունեան տասը հազար Ֆր. : Տիկին Այանեան Տուտու Թէրզիեանդուեա– նի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանք :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չո – րեքշաբթի գիշեր:

Կը խօսի Պ. ՎԱՀԱՆ ՉԷՅԹՈՒՆՑԵԱՆ : Նիւթը՝ Ազգային Անկախութեան եւ ազա– տութեան հարցը ըստ պետութեան նոր ըմբռնումներու :

Պ. Գ. Մելիքեան կուտայ գեղարուես – տական բաժին ձայնադրի վրայ : Մուտ – քը ազատ է :



Imp. Araxes - 46, Rue Richer. Paris (9e)

## ՈՒՐՖԱՅԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏՆԵՐՈՒ 39ՐԴ ԵՒ 35ՐԴ

ՏԱՐԵԴԱՐՁԵՐՈՒ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Կազմակերպուած Փարիզի Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ

Յունուար 2, Կիրակի ժամը 15էն 24

**CERCLE MILITAIREի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

Բարձր հովանաւորութեամբ Dr. BERNARD LAFAYի
Նախկին նախարար, Փարիզի քաղաքապետ

ՆԱԽԱԳԱՀ՝ Général d'Armée DUFIEUX

Խօսք կ'առնեն Պ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ, Պ. ՎԱՐԴԱՆԵԱՆ

Արտասանութիւն Տիկին Ա. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ (ֆրանսերէն), Պ. ՇԱՀԱՆ ՍԱՐԵԱՆ երգ, Տիկին Լ. ԱՄԻՐԱՅԵԱՆ:

Orchestre BERNIE OLIVER (Grande formation)

Ճոխ պիւֆէ, աւանդական հում քիւֆթէ, Սէմսէք, ժողովրդական գիներով :
Մուտք 300 ֆր., ուսանողներու եւ զինուորներու կէս գին :

Խօսնակ՝ ԳՐԻԳՈՐ ԱՄԻՐԱՅԵԱՆ

Տալաթէլի կարծիքով, երբ Գերմանիան վերազինուի, Ռուսերը իր զինակցութիւնը պիտի փնտռեն, վասն զի անոնք միայն կրնան տնտեսական աճազին չահաստան – ներ տրամադրել: Թեր քուէարկելու համար, կը պահանջէ նախապէս բանակցիլ Խ. Միութեան հետ, որոշ նպատակներով եւ անսահման տեւողութեամբ :

Վիճաբանութիւնները չարունակուեցան գիշերը ուշ ատեն :

## «ՎՏԱՆԳԸ ՄԵՂՄԱՑԱԾ ՉԷ»

Անգլիոյ երեսփ. ժողովը Դշ. օրուան նիստին մէջ, արտաքին նախարարը, Սըր Էնթընի Իտըն, զեկուցում տալով Փարիզի մէջ կատարուած խորհրդակցութեանց մասին, ըսաւ թէ կատարեալ միաձայնութիւն կը տիրէր: «Տասնըչորս արտաքին նախարարները ստիպուեցան հաստատել թէ երբեք չէ մեղմացած խորհրդային սպառնալիքը: Խ. Միութեան զինուորական ուժը, որ արդէն ահագին չափերու հասած է, արագօրէն կ'աճի: Անոր քաղաքականութեան նպատակն է միշտ չփոթութիւն սերմանել ազատ աշխարհի չարքերուն մէջ, պառակտելու եւ տկարացնելու համար: Այս հաստատումները նկատի առնելով էր որ Ատլանտեան Խորհուրդը զինակից ազգերուն համար անհրաժեշտ դատեց ամրապնդել իրենց միութիւնը: Հակառակ իրենց ռազմական կազմակերպութեան ուժին, տակաւին չատ անելիքներ կան, որպէսզի այդ ուժը դառնայ բաւական զօրաւոր՝ վհատեցնելու համար նախայարձակ մը: Այս տեսակէտէն, կարեւոր ազդակ մը պիտի կազմէ արեւմտեան Գերմանիոյ բերելիք նպաստը »:

Իտընի կարծիքով, չատ աւելի կարեւոր ազդակ մը կը կազմեն այն նոր զէնքերը որոնցմով պիտի սպառազինուին Ատլանտեան ճակատին ուժերը : « Յառաջիկայ քանի մը տարիներու ընթացքին, Ատլանտեան դաշինքին ուժերը սպառազինուած՝ հիւլէական նոր զէնքերով, պիտի կրնան ետ մղել թուապէս գերազանց ռուսական ուժերու յարձակումը արեւմտեան Եւրոպայի դէմ» :

---

ՊԵՐԼԻՆԻ արեւմտեան չրջանին ապահովութեան տեսչութեան նախկին վարիչը, Քոլպ, արեւելեան Գերմանիա փախաւ: Կ'ըսուի թէ գաղտնի վաւերագիրներ ալ փախցուցած է :







Օր. ՄԱՌԻ – ԹԵՐԵԶ ՓԷՐՁԷՄԼԻԵԱՆ
Պ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԴԱՐԲԻՆԵԱՆ
Ամուսնացած

Կնքահայրութեամբ Տէր եւ Տիկին Նշան Փօլատեանի :

Պուլոնեը Դեկտ. 18, 1954 Մէօտօն

× Այս առթիւ Տէր եւ Տիկին Նշան Դարբինեան հազարական ֆրանք կը նուիրեն Խրիմեան դպրոցին, «Յառաջ»ի տարածման եւ Մուրատ Ռաւունեանական Ֆոնտին, (այս վերջինը ստանալ «Յառաջ»էն) :

## ՏՕՆԱԾԱՌ

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի շրջանի մասնաճիւղերով :

29 Դեկտ. Չորեքշաբթի ժամը 15էն 19 :

Սօսիէթէ Սավանթի մեծ սրահին մէջ 8 Ռիւ Տանթօն, մէթրօ Օտէոն կամ Սէն Միշէլ :

Խմբերգ, ներկայացում, արտասանութիւն, դաշնակ, հայկական պարեր եւն.:

ՇԱՐԺԱՆԿԱՐ

Կաղանդ պապայի տեսարան :
Մանրամասնութիւնները տեղին վրայ :
Մուտքը ազատ է

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Նոր տարի եւ Ս. Ծնունդ

26 Դեկտ. Կիր. Տօն Ս. Ստեփաննոսի Նախավկային :

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ Ս. ՊԱՏԱՐԱԳ ՇԱՎԻԼԻ ՄԱՏՐԱՆ ՄԷՋ

Այս կիրակի Տօն Ս. Ստեփաննոսի: Երգեցողութիւն ղեկավարութեամբ Պ. Կ. Բագոսեանի: Յետ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Արմենակ Պետեանի մօր մահուան առաջին տարելիցին առթիւ:

Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:

●

ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ Պոմոնի Ս. Գր. Լուս. եկեղեցւոյ արարողութեանց :

25 Դեկտ. 1954, շաբաթ Տօն Սրբոյն Ստեփաննոսի նախասարկաւագին : (Պիտի կատարուի կիրակի առաւօտ) : Սկիզբ ժամերգութեանց ժամ8, Սուրբ Պատարագ ժամ 10:

(Շար.)

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Արտաշէս Յակոբեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց մօր եւ մեծ մօր՝ ՄԱՐԻԱՄ ՓԱՆՈՍԵԱՆԻ՝ մահուան առաջին տարելիցին առթիւ : Ինչպէս նաեւ ՄԱՐԻԱՄ ՅԱԿՈԲԵԱՆԻ եւ փոքրիկն Սրբուհի Քէչեանի յիշատակին, այս կիրակի, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին: Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները :

★

Այրի Տիկին Սիրանոյշ Գարակէօզեան , Տէր եւ Տիկին Աթմաճեան, Պ. Մարտիրոս Գարակէօզեան (Նոր Սերունդ) կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն եւ հօր , ԱՍԱՏՈՒՐ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ, այս կիրակի Փարիզի, Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները

★

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Անուշ Քասաքսեան եւ Տէր եւ Տիկին Յովհաննէս Քըշքէլէքեան կը ծանուցանեն թէ այս կիրակի Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն եւ պատարագ իրենց եղբօր նորոգ հանգուցեալ Սարգիս Մըլխնեանի (Եվերեկցի) համար :Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները :

Imp. Araxes - 46, Rue Richer. Paris (9e)

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Պուլվար Օտոյի Վռամեան ենթակմ. ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս չաբաթ ժամը 20ին ,սովորական հաւաքատեղին : Խիստ կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի կ'առնուին :

ՎԱԼԱՆՍ— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն բացառիկ ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս կիրակի առաւօտ ժամը 8.30–ին: Ահարոնեան ակումբը: Խիստ կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին: Անդամատետրը միասին բերել:

ՊԷԼՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս չաբաթ առաւօտ ժամը 10ին, 4 ռիւ Քոմփան :

ՎՐԻՊԱԿ.— Պուէնոս Այրէսի Ուս. Միութեան պարբերաթերթին անունն է ԿԱՃԱՌ ոչ թէ Կաչառ:





## ՈՒՐՖԱՅԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏՆԵՐՈՒ 39ՐԴ ԵՒ 35ՐԴ

ՏԱՐԵԴԱՐՁԵՐՈՒ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Կազմակերպուած Փարիզի Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ

Յունուար 2, Կիրակի ժամը 15էն 24

**CERCLE MILITAIREի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

Բարձր հովանաւորութեամբ Dr. BERNARD LAFAYի
Նախկին նախարար, Փարիզի քաղաքապետ

րութեան։ Արակումովի եւ իր պաշտօնակիցներուն կողմէ բանտարկուած քաղաքացիները այժմ լիովին վերատացած են իրենց իրաւունքները իրրեւ խորհրդային քաղաքացիներ։

✕ Արակումով առաջնակարգ դերքերու հասաւ 1940ական թուականներուն, երբ կը յաջորդէր Վ. Ն. Մերկուլովին, իբրեւ Նախարար պետական ապահովութեան։ Այդ օրէն Մալենկովի մարդը կը համարուէր, իբրեւ անոր քարտուղարը եւ մտերիմ խորհրդականը։ Յետոյ յանկարծ անհետացաւ։ 1953ի գարնան գրոյց կը շրջէր թէ ձերբակալուած է։ Ուրիշներ կ՚ըսէին թէ գնդակահարուած է եւ պատասխանատու կը համարէին Բերիան։ Մոսկուայի մէջ շրջած գրոյցներու համաձայն, այս պարագան ալ կը վերագրուէր Մալենկովի եւ Բերիայի միջեւ մղուած պայքարին։

Այս առթիւ հետեւեալ տարօրինակ պատմութիւնը շրջան կ՚ընէր բերնէ բերան.— Հանգուցեալ Ժդանով եւ Բերիա, որոնք երկուքն ալ կ՚ատէին Մալենկովը, քրքրեցին անոր անցեալը եւ երեւան հանեցին կարգ մը խողութիւններ որոնք կրնային խորտակել իր քաղաքական ասպարէզը։ Այդ խողութիւնները արձանագրուած էին Պետական Ապահովութեան դիւանաթուղթերուն մէջ։ Օգտուելով հիւանդ եւ ղառամեալ Սթալինի ազդեցութենէն, Մալենկով յաջողեցաւ Արակումովը նշանակել Ապահովութեան Նախարար, պարտկելու համար Ժդանովի եւ Բերիայի երեւան հանած խողութիւնները։ Երբ Արակումով անհետացաւ Սթալինի մահէն քիչ ետքը, Մոսկուայի մէջ կը կարծէին թէ Բերիա շահած է իր պայքարը Մալենկովի դէմ եւ թէ այս վերջինը, ոչ թէ Բերիան պիտի մաքրուի։ Բայց այժմ Արակումովի գնդակահարումը կ՚ապացուցանէ թէ ուրիշ գաղտնիքներ կան։ Բերիան էր որ ձերբակալուեցաւ, այն ամբաստանութեամբ թէ իր անձնական նպատակներուն կը գործածէ Ապահովութեան ուժերը որոնց գլուխը կը գտնուէր 15 տարիէ ի վեր։ Ամբաստանեալը ձերբակալուեցաւ Դեկտ. 24ին։ Իրեն յաջորդեց Սէրգէյ Կրուկլով, իբրեւ Ներքին Նախարար։ Սթալինի մահէն մինչեւ իր ձերբակալութիւնը, 112 օրուան մէջ Բերիան Բ. մեծ իշխանաւորն էր Խ. Միութեան մէջ, վարչապետ Մալենկովէն ետք։

## ՏՕՆԱԾԱՌ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի շրջանի մասնաճիւղերով։

29 Դեկտ. Չորեքշաբթի ժամը 15էն 19։

Սօսիէթէ Սավանթի մեծ սրահին մէջ 8 Ռիւ Տանթօն, մէթրօ Օտէոն կամ Սէն Միշէլ։

Խմբերգ, ներկայացում, արտասանութիւն, դաշնակ, հայկական պարեր եւն.։

ՇԱՐԺԱՆԿԱՐ

Կաղանդ պապայի տեսարան։

Մանրամասնութիւնները տեղին վրայ։

Մուտքը ազատ է

## ՏՕՆԱԾԱՌ — ՀԱՆԴԷՍ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղի կողմէ, մասնակցութեամբ դպրոցին հողաբարձութեան։ Տեղի պիտի ունենայ 2 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան սրահը։

Ձոխ յայտագիր, սիրուն անակնկալներ։ Կաղանդ պապան պիտի այցելէ մանուկներուն։

Մուտքը ազատ է։ Կը հրաւիրուի ամբողջ գաղութը անխտիր։

Մանրամասնութիւնները տեղին վրայ։

## ՈՒՐՖԱՅԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏՆԵՐՈՒ 39ՐԴ ԵՒ 35ՐԴ

ՏԱՐԵԴԱՐՁԵՐՈՒ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Կազմակերպուած Փարիզի Ուրֆայի Հայ Բ. Միութեան կողմէ

Յունուար 2, Կիրակի ժամը 15էն 24

**CERCLE MILITAIRE**ի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Բարձր հովանաւորութեամբ Dr. BERNARD LAFAYի

Նախկին նախարար, Փարիզի քաղաքապետ

ՆԱԽԱԳԱՀ՝ Général d'Armée DUFIEUX

Խօսք կ՚առնեն Պ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ, Պ. ՎԱՐԴԱՆԵԱՆ

Արտասանութիւն Տիկին Ա. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ (ֆրանսերէն), Պ. ՇԱՀԱՆ ՍԱՐԵԱՆերդ, Տիկին Լ. ԱՄԻՐԱՅԵԱՆ։

Orchestre BERNIE OLIVER (Grande formation)

Ճոխ պիւֆէ, աւանդական հում քիւֆթէ, Սէմսէք, ժողովրդական գիներով։

Մուտք 300 ֆր., ուսանողներու եւ զինուորներու կէս գին։

Խօսնակ՝ ԳՐԻԳՈՐ ԱՄԻՐԱՅԵԱՆ



Imp. Araxes - 46, Rue Richer- Paris (9e)





## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

### ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ

Նուիրուած ՈՍԿԻ ՀԷՔԵԱԹի։ Գործ՝ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ՝ երաժշտութիւն՝ Մեսումենցի։

Քնարական այս երաժշտութիւնը, մեծ խնամքով, ձայնագրի վրայ առնուած Պ. Գրիգոր Մելիքեանի կողմէ, պիտի ներկայացուի Դեկտեմբեր 29ին ժամը 9ին, Քաֆէ Քաւէ։

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։





**ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ** Պոմոնի Ս. Գր. Լուսաւորչի եկեղեցւոյ արարողութեանց։

1. Յունուար 1955, Շաբաթ։

Կաղանդ եւ Տարեմուտ, 1955 թուին Քրիստոսի։

Սկիզբ ժամերգութեանց ի ժամ 8։

Գոհաբանական Ս. Պատարագ ժամը 10։

(Շար.)

**ՆՈՒԷՐ.—** Տէր եւ Տիկին Նատրեան (Մօնթրէօյ) հինգ հարիւր ֆրանք կը նուիրեն «Յառաջ»ի, հինգ հարիւր ալ Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին, Շաւարշ Տէր Պարսամեանի մահուան Գ. տարելիցին առթիւ, 500ական ֆր. Անթիյի եւ Մոնմոռանսիի ծերանոցներուն, Տիկին Ալեքսանեանի մահուան տարեդարձին առթիւ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պարտք կը զգամ շնորհակալութիւն յայտնել բոլոր այն ընկերներուս եւ բարեկամներուս, որոնք անձամբ հիւանդանոց այցելելով, գրաւոր կամ հեռախօսով մխիթարեցին այդ դժնդակ օրերուս։

Կ. Երանեան

✕

**ՄԱՐՍԷՅԼ.—** Ֆ. Կ. Խաչի Սէն Ժերոմի մասնաճիւղը, շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գ. Կոփոյեանէ հազար ֆրանք, իրենց զաւկին՝ Ներսէսի ամերիկեան զինուորութիւնը լրացնելուն առթիւ։

**ԹՈՒՐՔԵՒԳԵՐՄԱՆ** առեւտրական դաշնագիր մը կնքուեցաւ Դեկտ. 27ին, Անգարայի մէջ: Արեւմտեան Գերմանիան 225 միլիոն մարքի փոխ մը կը բանայ այս դաշնագրով: Շատ մը ձեռնարկներու կարգին, ելեկտր ագարակ մը պիտի հաստատուի Թուրքիոյ մէջ :

**ԵԳԻՊՏՈՍԻ** արտակարգ ատեանը կախաղանի դատապարտեց Իսլամ Եղբայր մը, հինգ հոգի ալ ցկեանս բանտարկութեան: Ատեանը յարդ անպարտ արձակած է 37 ամբաստանեալներ, 50 հոգի դատապարտուած են 10 – 15 տարի թիապարտութեան, 23 հոգի՝ տասը տարուան (յետաձգուած): Դատավարութիւնները կը շարունակուին Նոյ. 1էն ի վեր :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Նոր տարի եւ Ս. Ծնունդ

1 Յունուար, Շաբաթ, Ամանորի պաշտամունք :

**ՓԱՐԻԶԻ** Եկեղեցւոյ Կրթ. Մարմինը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները .—

Պ. Մարգար Յակոբեանէ հազար ֆր., ողբ. Պետրոս Փափազեանի մահուան առթիւ :

Տէր եւ Տիկին Զ. Քիւթնէրեան հազար ֆր. Պանեօ Քաշանի Կարմիր Խաչի մասնաճիւղէ հազար ֆր., Սարեան ընտանիքէ տասը հազար ֆր. ողբ. Մարտիրոս Սարեանի մահուան առթիւ :

Տէր եւ Տիկին Ե. Յարութիւնեանէ, Վիլժիւիֆէն հինգ հարիւր ֆրանք, Տէր եւ Տիկին Քիւթնէրեանէ հինգ հարիւր ֆր. ողբ. Գրիգոր Յարութիւնեանի մահուան առթիւ:

Պ. Ճալալեանէ եօթը հազար ֆր. իր քըրոջ մահուան քառասունքին առթիւ: Ութն հազար ֆրանք :

× Պանեօ Քաշանի Կրթ: Մարմինը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները : —

Պ. Ենովք Յարութիւնեան իր աղջկան Օր. Տիգրանուհիի ամուսնութեան առթիւ հազար ֆրանք, նաեւ Տէր եւ Տիկին Զապէլ Փիլիպպոսեան հազար ֆրանք, իրենց անդրանիկ թոռնիկին առաջին տարեդարձին առթիւ:

## ՅՈՒՆՈՒԱՐ ՅՕԻՆ

ԿԻՐԱԿԻ ԻՐԻԿՈՒՆ, ՏԱՐՈՒԱՆ
ԱՌԱՋԻՆ՝ ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ
Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ

Կը ներկայացնէ եւ կը խաղայ Յ. Պարոնեանի՝ ՇՈՂՈՔՈՐԹԸ եւ Գ. Վահանի՝ ԱՌԱՆՑ ՍԻՐՈՅ :

Մանրամասնութիւնները յաջորդով :

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կարտանի «Նիկոլ Դուման» խումբի եւ Նոր Սեռունդի «Վարանդեան» Անդրանիկ Թատերախումբի, ղեկավարութեամբ Ն. Սարգիսեանի: Առաջին անգամ ըլլալով մեծ պատրաստութեամբ կը ներկայացուի Սարաճեանի ԱՇԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ

Ընտանեկան յուզիչ դրամ, չորս արար:

Այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Կարտան Պիվէրի «Գեղուն»ի տան մէջ :

Կէս գիշերէն վերջ հայկական եւ եւրոպական պարեր : Մուտքը ազատ է:

## ՆՈՒԷՐ

Ս. Ժերմէն Ան Լէյէն.— Պ. Եզեկելեան Նոր Տարուան առթիւ հազար ֆր. կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման, երկու հազար Լիոնի եկեղեցւոյ շինութեան եւ երկու հազար ալ Այնճարի «Յառաջ» վարժարանին: Ստանալ Յառաջէն :

× Քլէօմոն Ֆէռանէն, Տէր եւ Տիկին Սարգիս Թիւթիւնճեան իրենց զաւկին՝ Լեւոնիկի ապաքինման առթիւ հինգ հազար ֆր. կը նուիրեն Ֆ. Կ. Խաչի Օգնութեան կայանին եւ հազար ֆր. Շաւիլի մասնաճիւղին :

× Անթոնիէն Տէր եւ Տիկին Պետրոսեան Տիկին Արզուեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հազար ֆր. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի կայանին եւ հազար ֆր. ալ Հ. Յ. Դ. Տան Ֆոնտին: Ստանալ «Յառաջ»էն :

**ԿԸ ՓՆՏՌՈՒԻ**.— Բնիկ Կեսարացի Էօժէնի եւ Վիքթոր կը փնտռեն իրե՛ց եղբայրը՝ Արթին Օգումուշեան, որ կորսուած է Իզմիրի մէջ 1922ին: Կը բնակէր թիւ 35 Տէյիրմէն փողոց: Տեղեկացնել Տիկին Էօժէնի Տապանեանի, 19 ռիւ Մարսէլ Պինէ, Պուա Քոլոմպ (Սէն), Ֆրանս:

## ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌ

ԵՒ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ
ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Այս կիրակի ժամը ճիշդ 15ին, Ազգ. տան թատերասրահը, 32 ռիւ տը Թրէվիզ :

Կազմակերպուած Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնաճիւղին կողմէ :

Բոլոր աշակերտներու կողմէ պիտի ներկայացուի ԵՐԿՈՒ ԾԱՅՐԱՑԵՂՆԵՐԸ եւ ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԸ :

Կը հրաւիրուին ծնողները եւ բարեկամները :

## ՏՕՆԱԾԱՌ — ՀԱՆԴԷՍ

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղի կողմէ, մասնակցութեամբ դպրոցի հոգաբարձութեան: Տեղի պիտի ունենայ 2 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան սրահը :

Ծոխ յայտագիր, սիրուն անակնկալներ: Կաղանդ պապան պիտի այցելէ մանուկներուն :

Մուտքը ազատ է: Կը հրաւիրուի ամբողջ գաղութը անխտիր:

Մանրամասնութիւնները տեղին վրայ:

## Ս. ՊԱՏԱՐԱԳ ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Այս Շաբաթ, Յունուար 1, առաւօտեան ժամը 10ին Ս. պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս.Յովհ. Մկրտիչ եկեղեցին:

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՏՕՆԱԾԱՌ

Կաղանդի առթիւ կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Պուլ. Օտոյի մասնաճիւղին եւ Ս. Յակոբ Մատրան Թաղականութեան կողմէ, այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 2ին, Պար էնթէրնասիոնալի սրահը, 230 Շըմէն տը լա Մատրակ վիլ :

Առաջնորդութեամբ իրենց ուսուցչուհի Տիկ. Ս. Թորոսեանի պիտի ներկայացուի դպրոցական թատերախաղ մը, (Տօնածառի եռեւէն) 8–12 տարեկան աշակերտներու կողմէ :

Ծոխ յայտագիր եւ սիրուն անակնկալներ, Կաղանդ Պապան պիտի այցելէ մանուկներուն:

Մուտքը ազատ է, 7էն 10 հայկական եւ եւրոպական պարեր :

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ԵՒ ՏՕՆԱԾԱՌ

Ֆ. Կ. Խաչի Պոստոյի մասնաճիւղի դպրոցական հանդէսը այս կիրակի ժամը 15.30ին, 24 ռիւ տէ Պահիւթիէ :

Խմբերգ, արտասանութիւն, մեներգ, զուգերգ, տրամախօսութիւն, պար եւն.:

Զաւեշտ մը աշակերտներու կողմէ :

Կաղանդ Պապան մրգեղէններ պիտի բաժնէ փոքրերուն: Մուտքը ազատ է

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս կիրակի առաւօտ Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի ի յիշատակ Ուրֆայի հերոսներուն եւ նահատակներուն :

Այս առթիւ պիտի յիշատակուին նաեւ Փարիզի մէջ մեռած Ուրֆացիներէ Էքինճեան Կարապետ, Ճարահեան Խորէն, Եօթնեղբայրեան Գէորգ, Քիլէճեան Գէորգ, Թաշճեան Արշակ :

★

Տէր եւ Տիկին Կարօ Ժամկոչեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին իրենց մօր՝ ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՎԻՔԹՈՐԻԱ ՍԵՐՏԱՐԵԱՆԻ (Ծնեալ Տարայեան) մահուան քառասունքին առթիւ, եւ իրենց եղբօր Յովսէփ Տարայեանի յիշատակին :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ՈՒՐՖԱՅԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏՆԵՐՈՒ 39ՐԴ ԵՒ 35ՐԴ

ՏԱՐԵԴԱՐՁԵՐՈՒ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Կազմակերպուած Փարիզի Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ

Յունուար 2, Կիրակի ժամը 15էն 24

**CERCLE MILITAIREի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

Բարձր հովանաւորութեամբ Dr. BERNARD LAFAYի
Նախկին նախարար, Փարիզի քաղաքապետ

ՆԱԽԱԳԱՀ՝ Général d'Armée DUFIEUX

Խօսք կ'առնեն Պ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ, Պ. ՎԱՐԴԱՆԵԱՆ, Յ. ՀԻՍԱՅԵԱՆ

Արտասանութիւն Տիկին Ա. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ (ֆրանսերէն), Պ. ՇԱՀԱՆ ՍԱՐԵԱՆ երգ, Տիկին Լ. ԱՄԻՐԱՅԵԱՆ: Անիէռի եւ Իսիի Նոր Սերունդի երգչախումբը, ղեկավարութեամբ Պ. Գայիշ եանի :

Orchestre BERNIE OLIVER (Grande formation)

Ճոխ պիւֆէ, աւանդական հում քիւֆթէ, Սէմսէք, ժողովրդական գիներով :
Մուտք 300 ֆր., ուսանողներու եւ զինուորներու կէս գին :
Խօսնակ՝ ԳՐԻԳՈՐ ԱՄԻՐԱՅԵԱՆ



Imp. Araxes - 46, Rue Richer- Paris (9e)